

ՄԱՐՏԻ 1—2-Ը ՀՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԻՍՏԵՐԻ ԴԱՀԼԻՃՈՒՄ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ։ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ 450 ՀԱԶԱՐԱՆՈՑ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԿԱՏԱՐԱԾ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՈՒ ՀԵՏԱԳԱ ԱՆԵԼԻՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԶԵԿՈՒՑՈՒՄՈՎ ՀԱՆԴԵՍ ԵԿԱՎ ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Հ. Ս. ՔՈԹԱՆՋՅԱՆԸ։

Նկ. Ն. ԺՈՒԿՈՎԻ

# Իլյիչի նստարանը

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Մի նստարան է պարզ ու հասարակ,
Նման հին ու նոր նստարաններին,
Այս նստարանին Իլյիչն է նստել՝
Գիմնազիստական կապույտ շորերով,
Մեջքին՝ կապած իր ճարմանդով գոտին:
Նստում էր ուշիմ՝ բոլորի նման,
Բայց հոգով, հոգով ուրի՞շ էր մի քիչ...
Մթնել էր վաղուց,
Բայց գիմնազիայի դասասենյակում
Դեռ լույս էր վառվում:
Վոլոդյան մոտիկ իր ընկերներին
Շուրջը հավաքած՝
«Ի՞նչ անելու» գիրքն էր ընթերցում թաքուն:
Շատ էր կասկածում պահակը ծերուկ.
Բացում էր դուռն ու հարցնում կամաց.
— Ախր, գիշեր է, աշխարհն է քնում,
Ինչո՞ւ չեք դուք ձեր տները գնում...—
Վոլոդյան իսկույն
Թվաբանության գիրքն էր ցույց տալիս.
— Է՜խ, Մատվե՛յ քեռի, խնդիրը բարդ է,
Չարչարվում ենք ու բան դուրս չի գալիս:



Մինչև հիմա էլ դեռ գիմնազիայի
Թանգարան դարձած այդ դասարանում
Մնում է անշուք նստարանը այդ,
Ամենասիրած իր գիրքը վրան՝
Իր մանուկ հոգու երազը արդար,—
Թվում է, ահա պիտի ներս մտնի
Եվ կիսատ թողած իր գիրքը կարդա:



1917 թվականին Լենինը մոտ մեկ ամիս Հելսինկիում ապրել է մեքենավար Բլումկվիստի տանը։ Այս բնակարանում Լենինը աշխատել է «Պետություն և Հեղափոխություն» գրքի վրա։ Լենինյան այս սենյակի կահավորանքը նվիրվել է Տամպերե քաղաքի Լենինի թանգարանին։

# ՖԻՆԼԱՆԴԻԱ,



# ԼՃԵՐԻ ԵՐԿԻՐ

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

## 1.

Երևակայության մեջ Սկանդինավյան թերակղզին ինձ համար սառը, սահմանափակ գույներով աշխարհագրական հասկացություն է եղել։ Թերևս պատճառը դպրոցական դասագրքի կարճառոտ նկարագրությունն՞րն են կամ էլ քարտե՞զը՝ կենդանակերպ մի նկար, երեք կողմից ներփակված ծովերով ու օվկիանոսներով: Մեզ՝ հարավցիներիս համար, Սկանդինավիան որտե՞ղ է՝ ծայր հյուսիս:

Բայց ահա քավական եղավ մի կարճ ճամփորդություն, և քարտեզը դարձավ ռեալ իրականություն: Երկրորդի՞ն տարբեր և անակնկալներով լի: Պայծառ գույների աննկարագրելի համադրությամբ: Երկրի կեղևի քերծվածքներ հիշեցնող քարտեզային մանր ու տձև լճերը վերածվեցին բնության սքանչելի կտորների: Ֆինլանդիայում միայն՝ 62 հազար լիճ:

Եվ հիմա, երբ դարձյալ այնքան հեռու են Ֆինլանդիան և Սկանդինավիան, մտածում եմ՝ ինչո՞ւ տպավորություններս չբաժանեմ ձեզ հետ, իմ պատանի՛ բարեկամներ: Մանավանդ որ, խոստովանում եմ, Ֆինլանդիան և Շվեդիան դիտել եմ մի քիչ էլ ձեր աչքերով: Դրա պատճառը ո՛չ այն ժամանակ և ո՛չ էլ այժմ չեմ կարող բացատրել: Թերևս դա երկուստեք հասկանալի դառնա, երբ միասին վերապրենք տպավորություններիս այս շարանը:

Եվ այսպես՝ սկսենք:

1977 թիվ, 18-ը մայիսի: Գնացքը կանգ է առնում Ֆիննական մի փոքրիկ կայարանում: Ամպամած, խաղաղ օր է: Ինչքա՞ն շոգ էր Երևանում, և ապա Մոսկվայում՝ գարնան վերջին այդ օրերին: Իսկ այստեղ, կարելի է ասել, պատահեց մի բան, որ հազվադեպ է լինում. նույն տարում մենք դիմավորեցինք երկրորդ գարունը: Երկաթուղուց աջ ու ձախ եղևնիներ են, կեչիներ: Նուրբ, բաց կանաչ տերևիկները կարծես ցմրուխտե ասեղներ լինեին սաղարթի ծառերի կատարներին: Տեղանքը տեղ-տեղ հարթ է, տեղ-տեղ բլրատիպ և դեռևս չծաղկած խոտհարքների մեջ հայացքդ ձգում է գրանիտի մի ժայռաբեկոր, կողքին՝ ավելի փոքրերը, հետո նորից՝ անտա՞ռ, անտա՞ռ, ապա լճի անշարժ հայելի:

Մի օր անց իմ մտքում որոշակի ձևակերպվեց. ժայռը ֆիննական բնության պարզն է: Եվ ապա օրեր անց այդ միտքը մի քիչ այլ երանգ ստացավ՝ ժայռը խուսափողին էլ նկարի անբաժանելի մասն է:

Գնացքը սուրում է դեպի Հելսինկի, անցնելով ֆիննական տների կողքով: Իրարից բավականաչափ հեռու, ձևով ու գույնով տարբեր փայտե այդ յուրօրինակ տները կարծես հատուկէնտ դիմավորողներ լինեն, որ արագորեն ետ են վազում՝ ճեպընթացին մի սյան ողջունելուց հետո: Ֆիննական տներից մեկը հատկապես մնացել է իմ հիշողության մեջ: Մոխրագույն պատերով, սև տանիքով, լայն պատուհաններով և ձեռնասարքով մի կառույց էր, որ կարծես բուսել էր բլրի լանջին:

Հելսինկի՝ Բալթյան ծովի դուստր: Այսպես են կոչում ֆինները իրենց մայրաքաղաքը: Առաջին բանը, որ այստեղ գրավում է

օտարականի ուշադրությունը, այն է, թե ինչպես են քաղաքի տերերը, հատկապես շինարարները «ենթարկվել» բնությանը: Տեղանքը անհարթ է և ժայռոտ. և հենց այդ երկու հանգամանքն էր, որ այլ պարագայում կարող էր բացասաբար անդրադառնալ, այստեղ օգնել է մայրաքաղաքին յուրօրինակ տեսք տալու: Տները, հուշարձանները, վբոսայգիները, ժամանակակից խոշոր կառույցները, այնպես են ձուլված տեղանքին, և բնությունը այնքան առաջնային է այդ ամենի մեջ, որ կարծես ամառանոցային քաղաքի թաղամասերն են հաջորդում իրար:

Հուշարձան՝ աշխարհահռչակ կոմպոզիտոր Յան Սիբելիուսին: Ուղղակի Հելսինկիի կենտրոնում: Զբոսայգու զիգզագ արահետներով մտնում ենք մի փոքր տափաստակի և կանգ առնում, որովհետև դիմացը, սպիտակ գրանիտե բնական պատվանդանին բարձրանում է... երգեհոնը:

Ո՞վ ասաց, թե հուշարձանը երգեհոն է կոչվում: Դեռևս ոչ ոք. բայց տարբեր երկրներից եկած տուրիստների համար ընդամենը մի պահ է պետք անվանակոչելու հուշարձանը:

Գրանիտե սալարկ ժայռի կենտրոնում մետաղե չորս հենարանների վրա դեպի վեր են ձգվում երգեհոնի անհամար խողովակները, որոնք ինչքան բարձրանում են, այնքան խտանում և կարճանում են:

Եվակի այդ հուշարձանի հեղինակը կին է՝ ճարտարապետ և քանդակագործ Հելենա Հիլտունենը: Չժանգոտվող մետաղից ձուլված յուրաքանչյուր խողովակը վերևից ներքև ծառի ճաքած բուն է հիշեցնում: Սոճի, եղևնի, կեչի: Իսկ թե որտե՞ղ են այդ ծառերը, որոնց կարողանաիպերն բնօրինակված են, կիմանաք հետո:

Քանդակագործը աշխատանքն սկսել է 1961 թվականին և ավարտել է 1967-ին: Նրան մի ծեր կին վրո է օգնել: Հուշարձանից մի քանի քայլ հեռու, դարձյալ ժայռաբեկորների բնական պատվանդանին, Սիբելիուսի հարթաքանդակն է:

Գիդը պատմում է, որ երբ հուշարձանի կառուցումն ավարտվել է և մարդիկ եկել են դիտելու, ներ դիպուկ բնորոշել է. «Հելենա Հիլտունենը Ֆինլանդիայի քամացույն ձուլողն է»:

Քանի որ հուշարձանը զբոսայգում էր, ես ուշադրություն դարձրի, թե մոտակայքում ինչ բույսեր են աճում: Հետաքրքիր է, չէ՞, արդյոք Ֆինլանդիայում կհանդիպե՞մ ծանոթ բույսերի: Առաջինը, որ գրավեց ուշադրությունս, ծաղկած բոցենին էր: Կողքին՝ վառ դեղին վարդակակաչները: Բողբոջել էին յասամանի թփերը: Խոտերի մեջ կանաչին էին տալիս եղինջը, եպան յեպուն, երեքնուկը, խատուտիկը: Մեկ այնքա՜ն ծանոթ ու սիրելի բույսեր: Ուրեմն Հայաստանն այնքան էլ հեռու չէ Ֆինլանդիայից, ինչքան ինձ թվում էր, անցավ մտքովս:

Երբ մենք դուրս էինք գալիս զբոսայգուց, գիդը ասաց, որ գնում ենք դիտելու ևս մի հուշարձան, որը կոչվում է եկեղեցին՝ ժայռի մեջ: Ամբողջ ճանապարհին ես մտածում էի ժայռափոր մեր Գեղարդի մասին, որը նշանավոր հայ ճարտարապետ Գալձակը մեծ հմտությամբ կառուցել է 13-րդ դարում: Իսկ այն, ինչ տեսնելու ենք քիչ հետո, դարձյալ ժայռեղեն մի եկեղեցի է, որ կառուցվել է 20-րդ դարում:

Ժայռը եղել էր ու կար: Հենց քաղաքի կենտրոնում: Ո՞վ չգիտեր տեղը: Բայց հարց էր՝ ի՞նչ կառուցել, որ ամենալավ ձևով օգտագործվեր: Դրա համար չէին շտապում, որպեսզի չսխալվեին: Շատերն առաջարկում էին ռեստորան կառուցել: Սակայն հաղթում են նրանք, ովքեր կողմնակից էին եկեղեցի կառուցելուն: 1971 թվականին Սալմինեն եղբայրները ներկայացնում են նախագիծը: Ճարտարապետները տեղանքը թողել են այնպես, ինչպես եղել է ի սկզբանե: Բնության ստեղծած գրանիտե բոլորաձև պատերի վրա դրել են ծածկը. նախ ապակե օղակաձև շերտ՝ լուսավորության համար, և ապա նրա վրա՝ գմբեթը, համակցված պղնձե սալիկներից:

Քարը ներսից մշակված չէր: Ժամանակի հետքը վրան, տեղ-տեղ մամռապատ, տեղ-տեղ ջրի շիթերը մգացնում են քարը, ինչպես Հրազդանի կամ Գառնիի ձորում՝ բազալտե ժայռերի վրայով հոսելիս: Ձևափոխության և ջեռուցման ոչ մի սարքավորում տեսանելի չէ: Չնայած դրան, կլոր տարին պահպանվում է ջերմության նույն աստիճանը և անընդհատ մատակարարվում թարմ օդ: Քանի որ այդտեղ համերգներ են լինում, բնականաբար տեղադրված են աթոռներ և երգեհոն: Սակայն այնպիսի գույներով, որ բնականին մոտ լինեն. օրինակ, աթոռները սև փայտից են, մանուշակագույն պաստառով երեսպատված: Իսկ երգեհոնի խողովակները պղնձագույն են, փայտյա մասերը սև անգույներով և քարի տարբեր երանգներով: Գործիքն ամբողջությամբ այնպիսի տպավորություն է թողնում, կարծես վաղուց ի վեր գրանիտե այդ պատի հետ հարևանություն է արել:

Մինչ իմ ուշադրությունը գրավել էին մուտքի դիմացի պատին ընկած արևի շողերը, և ես պարմացած մտածում էի, թե որտեղի՞ց կարող էին ճառագայթները թափանցել, քանի որ դուրսն ամպամած էր, քանիինգ-երեսուն դպրոցականներ, ուսուցչի ուղեկցությամբ ներս մտան: Մի երիտասարդ նրանց հրավիրեց առաջ: Չրույցն ինչի՞ մասին էր, չհասկացա, որովհետև խոսում էին ֆիններեն, բայց 10-12 տարեկան այդ չարաճճի տղաներին ու աղջիկներին նայելը շատ զվարճալի էր: Հիշեցի Սարոյանի հերոսներին, որոնք կիրակի օրերը եկեղեցի էին հաճախում: Նրանք, ովքեր առաջին շարքում էին, ձևացնում էին, թե ուշադիր լսում են, իսկ վերջին շարքում կանգնածները հրում էին միմյանց, կամ թուղթ, կամ ... տուրիստներին: Ի՞նչ կարող ես անել, երեխաներն ամենուր երեխաներ են: Շուտով նրանք թույլտվություն ստացան դիտելու մանրամասները: Անմիջապես ցրվեցին անառակը ... բան հայտնաբերելու մղումով: Եվ ի՞նչ եք կարծում, նրանց ետևից գնալով ես ի՞նչ պարզեցի: Դիմացի պատին ընկած ճառագայթների աղբյուրը թաքնված էր մի խոշոր քարաբեկորի ետևում՝ էլեկտրական երկու լուսարձակ, որոնք օրվա բոլոր ժամերին ապահովում էին մեծ լուսատուի ներկայությունը ժայռակոփ այդ շինությունում:

Դուրս գալուց առաջ ես դարձյալ անդրադարձա այն մտքին, որ ճարտարապետը բոլորովին չի վրդովել բնությանը. պարզապես գրանիտե պատին, «արևի» շողերս էին, քարի երակները, ջրի շիթերը, ինչպես պատահում է բնության մեջ:

(Շարունակելի)

# ԻՆՉՈ՞Ւ ԵՍ ԿՐԱԿՈՒՄ ԲԱՐԵԿԱՄԻԴ ՎՐԱ...



Ահա սա է ուրուրը՝ հողագործ մարդու դարավոր բարեկամը

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Հրազդանի ձորով դեպի սարերն էր բարձրանում հերթական գարունը: Եվ ուր հոսում էր, խշշոցով հալվում էին ձյան մնացորդները և կանաչ գլխիկներ էին բուսնում խոնավ ու ջերմացած հողից:

Լուսակերտի ճամփին կանգ առա ու լուռ նայում եմ մինչև Հրազդանի ձորը ձգվող նոր անտառին: Բողբոջներն ուռչում են և շուտով ծառերը կտերևակալեն:

Հանկարծ անտառը թնդաց հրացանի որոտից: Շտապ խորացա անտառի մեջ՝ տեսնեմ երկու պատանի, ամեն մեկի ձեռքին՝ միփողանի որսորդական հրացան:

— Ինչի՞ վրա էիք կրակում,— խստությամբ հարցրի ես:

— Ա՜յ, նրանց...

Ու տղաներից մեկը ձեռքը մեկնեց դեպի վեր: Այդ ժամանակ միայն նկատեցի, որ բազմաթիվ խոշոր թռչուններ պտույտներ են գործում Արզնու ձորի վրա, և նրանց երամները երկնքով ձգվում են դեպի Եղվարդ:

Ի՞նչ թռչուններ են սրանք, և որտեղի՞ց այսքան հոծ բազմություն: Պարզ է, եկվոր են, հարավից դեպի հյուսիս են չվում և սա, ուրեմն, նրանց ճանապարհն է:

— Հիմա գարուն է, երեխանե՛ր, ո՛չ մի թռչունի վրա կրակել չի կարելի,— պատվիրեցի տղաներին մեքենա նստելիս:

Երբ անցա Նոր Գեղի ավանը, ձախ կողմի վարելահողերից տրակտորի հռնդյուն լսվեց, իսկ վերևում դարձյալ թևածում էին այն թռչունները: Նկատեցի, որ նրանցից ոմանք շեշտակի ցած են խոյանում:

Գնացի տեսնեմ այս ի՞նչ թռչուններ են և ի՞նչ բանի են:

Գնացի ու ներկա եղա մի անսովոր տեսարանի: Տրակտորները վարում են, իսկ նրանց հետևից վազում են ուրուրի մեծության թռչուններ: Երբեմն կանգ են առնում, ինչ-որ բան հափշտակում թարմ գուղձերի արանքներից: Մեկն էլ թևերն առաջ չռած վազեց հերկից դուրս և, քարերի արանքներով փախչող մի փոքր կենդանու հասնելով, կտցեց, մի քանի անգամ գետնով խփեց ու կուլ տվեց:

Պարզ է լույսի պես. մուկ են որսում: Տրակտորը քանդում է մկնակերպ կրծողների բները, իսկ սրանք ափալ-թափալ վրա են տալիս, որ մուկը ժամանակ չունենա թաքնվելու: Ու այնպիսի տագնապի մեջ են, որ չեն խրտնում ո՛չ տրակտորի աղմուկից, ո՛չ իմ մեքենայից, և ո՛չ էլ ինձնից, որ ահա ամբողջ հասակովս մեկ կանգնած դիտում եմ իրենց որսորդությունը:

Ա՜յ իսկական բարեկամ: Իսկ մեր գյուղում բոլոր տատիկներն ու մամիկները ատում էին ուրուրին: Եվ ինչի՞ համար, ամիսը մեկ-երկու ճուտ փախցներ կամ՝ ոչ: Մկներին կոտորելը չէինք տեսել, դրանից էլ թյուր կարծիք ունեինք այդ թռչունի մասին:

Այդ դեպքից մի քանի օր անց ես հյուր էի Արտաշատի Դիտակ գյուղում: Ուշ երեկո էր, պատշգամբում նստած նարդի էինք խաղում, երբ մոտակա պարտեզից կրակոցներ լսվեցին: Հրացանս վերցրի, բայց տանտերը միջամտեց.

— Գնալու կարիք չկա, մեր տղերքն են:

— Ինչի՞ վրա են կրակում:

— Լաշխորների...

— Լաշխորն ի՞նչ բան է:

— Լաշխոր մենք ուրուրին ենք ասում: Դրանք հարյուրներով...

Էլ շարունակությունը չլսեցի. շտապում էի արյունահեղության առաջն առնել, որովհետև շարունակում էին կրակոցներ լսվել գյուղի շրջակայքի այգիներից:

Եվ երբ դուրս եկա գյուղից, լիալուսնի լույսով տեսա, որ մերկ ծառերի վրա անթիվ-անհաշիվ թուխ թռչուններ կան նստած: Կրակոցներից նրանց մի մասը օդն էր բարձրացել, մյուսները սսկվել էին ճյուղերի վրա:

— Դադարեցրե՛ք կրակը, անպիտաննե՛ր,— որոտացի ես և հանդիպածս տղային պատվիրեցի անմիջապես ընկերներին հասցնել իմ կարգադրությունը:

Կրակը դադարեց, բայց ես երկար ժամանակ չէի խաղաղվում: Խե՜ղճ թռչուններ: Ո՞վ գիտի որ երկրից ահագին ճամփա են անցել, եկել մեզ մոտ մի փոքր դադար առնեն, որ շարունակեն քոչը դեպի իրենց բնակալման ավանդական վայրերը, ուր բույն պիտի շինեն, ձագեր հանեն ու գուրգուրանքով մեծացնեն: Իսկ այստեղ արճիճով են դիմավորում... Այսպես էլ նամարդությո՞ւն: Բա հոգնած ու ննջող հյուրի վրա կկրակե՞ն... Թո՜ւհ ձեր նամուսին...

Առավոտյան սրահներում թոնիրներ վառվեցին. մեր քաջ որսորդները փետրահան էին անում իրենց զոհերին: Գնացել եմ մոտները ու խոսեցնում եմ.

— Զարմանալի վարպետ որսորդներ եք, տըղե՛րք, գիշերով ո՞նց եք կարողանում նշան բռնել:

Ժպտում են խորամանկորեն:

— Նշանս ո՞րն է: Ծառերի վրա կուտակված են, հրացանդ մեկնիր, աչքերդ խուփ արա ու ձգանը քաշիր...

— Ու կրակածդ փուստ չի՞ անցնում:

— Չէ՛, ավելին, պատահում է, որ մի կրակոցով երկուսն ենք ցած գցում: Էդպես չի՞, Վահա՛ն:

Վահանը որսի այդ եղանակին լավ ծանոթ էր, գլխի շարժումով հաստատեց:

— Դե սրանց երամները շատ մեծ են,—ավելացրեց նա:— Երեկ, օրինակ, Նախիջևանի կողմից մի երամ եկավ, իջավ մեր գյուղի վերին լանջի ղըռերում և ամբողջ լանջը ծածկվեց ուրուրներով: Այնքան շատ էին, որ մի մասն էլ ծառերին իջան: Որ ասեմ հինգ հարյուր թե կլիներ, հավատացեք:

— Ի՜նչ հինգ հարյուր, տարվա էս եղանակին հազար լաշխորից բաղկացած խումբ էլ է պատահում,— նրա խոսքը կտրեց թոնիրը շրջապատողներից մեկը:

— Դե, էդքանից որ երեք հատ ինձ վերցնեմ, դա ի՞նչ մեծ մեղք է որ,— արդարացավ Վահանը:

— Հա՛, նա երեքից ավել չի խփում: Բայց մեղքըս ինչ թաքցնեմ, տասից պակաս եղավ, ես տուն չեմ գա,—պարծեցավ առաջինը:

— Կեցցե՛ս, ա՜յ որսորդ,— հեգնեցի ես:

Կարծեց, թե գովում եմ, ոգևորվեց.

— Ամեն գարնան իմ բաժինը քսան-երեսուն լաշխոր է:

— Նորի՜ց կեցցես...

Ապա լրջացա ու խստությամբ հարցրի.

— Իսկ ինչո՞ւ եք կոտորում էդ հարամ թռչուններին:

— Թոնրի վրա քյուլլամիշ ենք անում: Հիմի խորոված կպատրաստեմ, տես ինչ համով բան է:

— Ախր դրանք շատ օգտակար թռչուններ են, դրանք ոչնչացնում են մկնակերպ կրծողներին... Դրանք...

Ո՞ւմ ես ասում...

— Է՛, օգտակարին չե՞ն ուտում... Վահա՛ն, խանձեցիր պրծա՞ր... դե մի դե՛սը տուր՝ փորը թափեմ:

Ի՞նչ անեմ, ի՞նչ հնարք բանեցնեմ, որ սրանք ձեռք քաշեն ամեն գարնան և ամեն աշնան չուի ժամանակ կրկնվող այս սպանդից:

Դիմեցի վերջին միջոցին.

— Տղե՛րք, դրանց հիմնական սնունդը մուկն է... երեք օր առաջ աչքովս տեսա, որ մկներ են որսում ու կուլ տալիս:

Դժվար է համոզել, քանի որ դուրեկան խանձահոտը բռնել է բակը:

— Ոնց որ աղվեսի մսից մկնահոտ է գալիս, էնպես էլ...

Լսող չկա:

Այդ ժամանակ այն պարծեցող որսորդը հանեց թռչունի փորոտիքը, ուշադիր տնտղեց ու մի բան գլխի ընկնելով դեն նետեց:

— Իսկապես մուկ է կերել, սրիկան... տեսե՛ք կիսամարս մուկը՝ ստամոքսի մեջ:

— Թո՜ւ, աղբանոցը գցեցեք էդ հարամ լեշերը,—գոչեց Վահանը զզվանքով:

Թոնրի կրակն իջնում էր, բոլորն էլ հիասթափված էին ու տխուր:

Միայն ես էի ուրախ, որ գտնվեց մեր թևավոր բարեկամներին փրկելու միջոցը:



# Երա-զանքը սուտ չի լինում

Բակում՝ բարդու տակ, Աշոտն ու Արմենը ստվարաթղթից տիեզերանավ են պատրաստում:

— Տիեզերանավի ծայրը բարդու կատարի պես պետք է սուր լինի, որ հեշտությամբ հաղթահարի օդի դիմադրությունը,— ասում է Աշոտը,— ու ներսն էլ կոնաձև պետք է լինի, որ տիեզերագնացը հարմար նստի մեջը:

— Չէ մի չէ՛, բա՛ն հնարեցիր:

— Չեմ հնարում... հայրս է ասել...

— Հա՛յրդ..

— Ինչո՞ւ ես զարմանում... հա՛, հայրս... Չգիտե՞ս հայրս տիեզերագնաց է... ես էլ եմ տիեզերագնաց դառնալու...— չնայելով քրքջացող ընկերոջը, շարունակում է Աշոտը,— Մարս եմ թռչելու... կտեսնես...

Եվ «տիեզերագնացի» որդի «տիեզերագնաց» Աշոտը, ասես Մարս մոլորակից, կարեկցանքով նայում է Արմենին:

— Որ էդպես է, իմ հայրն էլ տիեզերանավ կառուցող է...

Եվ «գիտնականի» որդի «գիտնական» Արմենը մատով լուրջ-լուրջ ուղղում է քթին թառած երևակայական ակնոցը:

— Վա՜հ,— Աշոտը Մարսից ընկավ բակ,— քո հայրը գործարանում խառատ էր, ե՞րբ դարձավ Կորոլյով:

— Իսկ քո հայրը տրամվայի վարորդ էր, երբվանի՞ց տիեզերանավ կառուցող դարձավ:

— Բայց ես տիեզերագնաց կդառնամ,— ծոր է տալիս Աշոտը:

— Իսկ ես՝ տիեզերանավ պատրաստող,— նույնքան երկար ծոր է տալիս Արմենը:

Աշոտի պապիկը, որ բակի ծառերի տակի հողն էր փխրեցնում, լսում է ու մտովի դիմում նրանց. «Երկուսդ էլ ճիշտ եք ասում, սուտ երազանք չի լինում, կատարվի թե չկատարվի, միևնույն է... Երազանքը ծաղիկ է, ծաղիկը գեղեցիկ է, պտուղ տա, թե չտա:

• 1977 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ • 1977 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ • 1977 •



«Պիոներ» ամսագրի 1977 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց բանաստեղծ Վահագն Կարենցին «Պատանի Լենինի նկարի առաջ», «Բալլադ ռուս զինվորի մասին», «Թռչնակը», «Ուրախություն» բանաստեղծությունների համար:



Նկարիչ Վաղարշակ Արամյանը «Երգող փետուր», «Ամբողջ աշխարհը երևաց», «Ամենագետ ու ամենակարող կարմրախայտը», «Բացատրագիրը» պատմվածքների ձևավորման համար արժանացավ 1977 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:




ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Կտրած թմբից ձախ՝ լեռան ստով շեղակի գալիս ու Մեղրաձորի լանջով ձորն էր ընկնում ձյունե մի արահետ։ Հայրը նկատեց, ուշք չդարձրեց, հետո նայեց ականջը ուսի ետևը պահելով։

— Էդ ո՞ր հիմարն է...— եկավ հոր ձայնը։

Սակայն նույն հետքը ձորից դուրս էր գալիս, պտտվում մացառուտ ձնաթմբի շուրջը և գալիս հատում սարի ձյունե ճամփան։ Հայրը չտեսնելո՛ւ տըվեց, չտեսավ-անցա՞վ, բայց դա խաբեության նման էր, քանի որ տղան նկատել էր նաև սառած արյունը։ Հայրը շուռ եկավ և հետքին նայելուց առաջ տղայի երեսին նայեց։ Դա արջի ու մարդու խառը հետք էր։ Արջի հետք էր և մարդու հետք էր՝ չնայած մարդու ոտքերին կոշիկ չէր եղել կամ կոշիկը փալասներով փաթաթված էր եղել։ Ո՞վ էր ում հետևել. մարդը՝ արջի՞ն, արջը՝ մարդո՞ւն։ Արյան երկու դժվար կաթիլ կար, ընկել ու քարացել էր։ Ճամփեզրի դարը ա՞րջն էր դժվար մագլցել, մա՞րդն էր ետ սահել, թե՞ ետ էին գլորվել երկուսը միասին։ Ճամփեզրով մի քիչ վերև էին գնացել, հետո հետքը աջ էր խփվում՝ դեպի ծմակի պռունկը։ Տղան իրեն միամիտ երեխա դարձրեց, որպեսզի հայրն իր համար չվախենա ու սուտ հնարի։

— Ձիավոր է անցել,— ասաց տղան։— Ձիավոր է, չէ՞, եղել։

Հայրը թքեց, ուղղակի թքեց այդ պատմության մեջ՝ արջի տառապանքի և մարդու տառապանքի, այդ խորհրդավորության ու այդ հերոսականության մեջ։

— Վախից գլուխը շեքն է կոխել՝ ձիավոր։ Չէ՛ մի ձիավոր, գլուխը բարձր էր ման գալու։

Լեռան թմբից՝ Կաղնուտ հեռավոր ժայռերում քարանձավներ կան, տղան այդ հետքերն սկսեց քարանձավից, վերելքներով-վերելքներով բերեց գլցեց լեռան այս երեսը, ճանապարհը կտրեց ու անցըրեց ձորերով դեպի Քոշաքարա հեռավոր սարահարթը։ Մտքով՝ տղան արդեն սարի գլխից նայում ու տեսնում էր նրանց սև կետերը ձյունածածկ սարահարթում։ Նրանց ուղին ե՞րբ էր սկսվել. վաղ առավոտյա՞ն, երբ տղան սպասում էր դռան տակ, երեկ գիշե՞ր, երբ տղան վճռեց հոր հետ խոտի գալ, մի շաբաթ առա՞ջ, մի ամի՞ս առաջ, թե՞ ամբողջ պատերազմի ժամանակ վիրավոր արջի ետևից նա լուռ քարշ էր գալիս։

Ճամփաբաժան եկան, ձմեռանոցի ճանապարհը շեղակիորեն գնաց դեպի լեռան թմբը, բայց հայրն իր ճանապարհը չմտավ և կանգ չառավ, նույն թափով գնաց Կապույտ աղբյուրի արահետով, որը ձյան տակ հավասարվել էր լանջին։ Հայրն, ի՜նչ է, որոշեց ձմեռանո՞ց չգնալ, գոմի դռան ջարդվածությունը հորը չնչի՞ն թվաց, հայրը որոշեց տղայի շալակն ի՞նքը կապել, ի՞նքը տղայի շալակը տալ։ Տղան հետո հասկացավ, որ հայրն ուղղակի փախավ, ուղղակի չուզեց տեսնել իր բարձված երեխային և հեռացավ, երեխայի չարչարանքը իր աչքից թող հեռու լինի։ Հայրը բլրի վրայից իրենց խոտն էր ցույց տալիս։

Բլրի գլխին՝ քամու վերջին ծվենը պոռթկաց նրանց ականջների տակ, նրանք բլրի ետևն անցան, և մեծ, պայծառ, ամայի, մեռյալ խաղաղություն էր։ Քամին մնացում էր լեռան ստվեր լանջին, իսկ այս կողմը արև խաղաղություն էր։ Տղան ականջները տրորեց, հայր ու որդի կանգնած նայում էին, և տղայի ականջներում վշշաց մինչև Քոշաքարա մեծ սարահարթ սպիտակ տարածությունների ամայի լռությունը։

— Բան է՝ ճամփիդ եթե պատահեն,— ասաց հայրը,— սուսուփուս անցիր գնա, չես տեսել, իսկ եթե հանկարծ խոսեցնի, բան հարցնի, ասա՝ մենակ չեմ, հերս ետևիցս գալիս է, պապս հետևիցս գալիս է, մերոնք գալիս են։

Խոտի բլուրը չէր երևում։ Տղայի հայացքը հածեց լանջով մեկ, բայց բլուրը չէր երևում։ Թմբեր էին երևում, բայց դրանք մրջնաթմբեր էին։ Ամբողջ սպիտակ լանջին մի փոքրիկ սև խալ կար, տղան հասկացավ, որ դա ճկուտի աղբյուրն է, տղան տեսավ նաև ճկուտի բարձր, չոր ցողունների միայն գլուխները, ձյունն ուրեմն այդքան բարձր էր։ Տղան խոտի բլուրը գտավ, բայց չուզեց հավատալ, որ դա իր ու մայրիկի աշնան բարձր բլուրն է, մրջնաթմբի չափ մի բան էր և ձյան տակ մըրջնաթումբ էր թվում։

Սկիզբը՝ «Պիոներ» 1—3։

— Բա ինչո՞ւ չի կրակում,— ասաց Տղան,— փամփուշտ չունի՞:

— Փամփուշտ չունի, հրացանը ժանգոտել է, հրացանի սանդը կոտրել է, հապարումի անհարմարություն,— ասաց հայրը:— Թշնամի էս լռության մեջ տրաքացնի ի՞նչ ասի: Գող է, գող,— ասաց հայրը,— վախկոտ գող է, կյանքը գողի պես հինգ տարի է թաքցնում է: Սառանք,— ասաց հայրը,— քեզ տեսնեմ:— Ոտքերը ջեղակի դնելով՝ հայրը գնաց դեպի սարի գլուխը, և Տղան թափով ներքև նետվեց:

— Արմո՛,— եկավ հոր ձայնը:

Տղան կանգ առավ ու ետ նայեց: Պայծառ արևի մեջ կանգնած՝ հայրը կարծես թե ժպտում էր:

— Տեսնես աչքդ չի ուտում՝ չամաչես:— Հայրը լանջը հատելով ու անտառի գլխով՝ կարճ ձեռքը շպրտեց դեպի գյուղը:

— Արմի՛կ,— նորից եկավ հոր ձայնը:

Հայրը հիմա պայծառ լանջին չէր, բլրի գլխին էր, և քամին նրա ձայնը պատռտում էր: Հայրը ջուր եկավ, կռացած գնաց, և կարծես հայրն ինքը չէր գնում, քամին էր տանում, և նրա փեշերի ծափերը հանգան:

— Արմենա՛կ,— լսեց Տղան, ետ նայեց, բայց դա այլևս պատրանք էր կամ հայրը սարի մյուս երեսից էր կանչում:

Տղան փախավ: Տղան կարծես չկար, չգոյությունից գոյանում էր, հետո փախավ: Տղան փախավ երեք անգամ: Հիշում է, որ Կապույտ աղբյուրի լանջով իջնում-իջնում կանգ էր առնում սպիտակ սառն արևի մեջ, ոտքը ձյունից դուրս էր քաշում, և սառցակալ կեղևը քերում էր սրունքը, հետո մյուս ոտքն էր քաշում, և ամեն անգամ ձյան կեղևը քերում էր սրունքը, կեղևը կոտրվում էր միայն թաթի տեղով մեկ, և ոտքը մինչև դեյրայի փեշը խրվում էր, և Տղան ոտքը ետ քաշելիս թաթը արում ու խոռոչներից արած էր հանում, բայց միևնույն է՝ կեղևը սրունքները քերծում էր, և Տղան ոտքը փոխելուց առաջ կանգնում ու նայում էր: Հիշում է, որ ձեռքերին փչեց, հետո փեշը բարձրացրեց ու ձեռքերը գոտու տակով աճուկների արանքը խցկեց: Ձեռքերը չէին տաքանում, իսկ աճուկները սառչում էին, և այդ պահին էր, որ Տղան հիմարաբար ժպտաց, ծղրտաց ու փախավ:

Տղան կարծում էր դեպի գյուղ է փախել, բայց ուշքի եկավ խոտի բլուրի մոտ: Ուրեմն դեռ չէր փախել: Սարսափելի էր, որ դեռ չէր փախել ու նոր էր փախչելու: Սպիտակ, կայծկլտուն լանջով՝ իր հետքը փախչում էր դեպի գյուղ, հետո կեռվում ու գալիս էր այդ ձնաբուրգի մոտ: Տղան պտտվեց բլուրի շուրջը, լաց եղավ ու կանգնեց մընաց: Ներքևի ձմեռանոցները լքված էին, Կապույտ աղբյուրի սև ոլորքը ձյուների մեջ լքված էր, ներքևի ձմեռանոցներից ոչ ոք չէր կանչում՝ «այ տղա, այ ա՛ղջիկ, էդ ո՞վ ես, էդ ի՞նչ ես»: Հորը խղճալով, գերիներին, արջին, իրեն խղճալով՝ Տղան բլուրի շուրջը մի անգամ էլ պտտվեց, ծկլթոցով հեկեկաց ու փախավ:

Դեպի անտառ պառիվարելուց առաջ՝ Տղան դարձյալ կանգնած էր ու ետ էր նայում լանջն ի վար իջնող իր հետքին, լեռան պարապ ուսագծին, ուր վերջին անգամ փողփողաց հոր ձայնը, խոտի ձնաբուրգից եկող իր ճանապարհին, որը վերջանում էր իր ոտքերի տակ: Տղան կանգնած էր, արևի մեջ միայն կանգնած էր, ոչինչ չէր անում, չգիտեր ինչպես պատահեց, որ խոտի ձնաբուրգի մոտ էր ու հիմա այնտեղ չէ:

Հիմա կանգնած է իրենց դռանը և ճանապարհից ոչինչ չի հիշում: Թերևս՝ միայն արջի հետքը և նրա հետքը և երկու կաթիլ սև արյուն, բայց դա էլ գուցե հոր հետ միասին տեսածն էր: Գյուղի մոտ, Տանձուտ խաղաղ հովտում, Տղան մտածեց բոխ պնել, բոխիներից մանր ճյուղեր ջարդել ու մի շալակ բոխ բերել, բայց դա ողորմություն էր ինքը իրեն, դա խաբեություն էր, և Տղան ձեռ քաշեց: Տղան ձեռքը թափ տվեց և պարտվածի իր գոյությունը հենց այդպես առանց սքողելու բերեց, աղջըկա կարմիր շորը հագին՝ անցըրեց Մեղրատանձու բլուրն ու իջեցրեց դեպի իրենց դուռը: Դանելանց արտաքնոցի կածանին մեկը կանգնած նայում էր,



թվում էր առավոտից այդպես կանգնած սպասել է: Ձմեռվա ծլատ օրը, աղքատ ժամանակվա նավթի պես ցամաքում էր, արևն արդեն Ճռուզթաթ ծմակի ուսին էր, և Մեղրատանձու կաղնեգույն լանջը պայծառ արևի մեջ էր: Տղայի կարմիր դեյրան վառվռալով էր երևում իրենց դռնից, և Դանելանց դռներից, և պապի դռնից, և Քառանց դռներից, և մեծ հորեղբոր ու Շուշան մորքուրենց դռներից... և թող երևար, Տղան իրեն չթաքցրեց ծառերի ետևը և շորը հագից չհանեց: Արևի դեմ հուրհրալով՝ Տղան Մեղրատանձու լանջով իջավ, եկավ իրենց դռանը, գոմի ու տան արանքում կանգ առավ: Պարանը, որ ռուս վինվորի նման ուսպանդ էր արել, հանեց ու շպրտեց գոմի նրահ, դեյրայի փեշերը բարձրաց-

բեց ու գլխով, մի վայրկյան իրեն աղջիկ կգալով ու իրենից կպվելով, հանեց ու խփեց լվացքի լարին, որը ձգվում էր տան սյունից գոմի սյունը, և կանգնեց մնաց: Մայրը, աղջնակը, եղբայրը տնից դուրս թափվեցին ու կանգնած նայեցին: Քիվի ամբողջ երկարությամբ ձեղունը հալոցք էր կաթում, արդեն բարակ սառույցներ էին առաջանում: «Նայեցեք,— մտքում ասաց տղան,— ձեզ համար թատրոն եմ»: Աղջնակի հասակը չէր հասնում և թաթիկները նա գցել էր բազրիքին ու ձգվում էր նայելու:

— Չի թողել,— ասաց մայրը,— ճամփից ետ է դարձել:

Տղան ուսը ծուլ արավ:

Մոր աչքերը սարսափից չռվեցին:— Խոտը գողացել են,— ասաց մայրը,— լավ չէինք դրել՝ բուքը տարել է:

— Ոչ,— ասաց տղան,— էնտեղ է:

Մայրը ժպտաց.

— Սառնամանիք է եղել՝ կարացել չես շալակ կապես:

Տղան նայեց ճրագթաթ սառը ծմակին:

— Տո՛ւն մտեք,— ասաց մայրը,— ցուրտ է, տո՛ւն արի:

Տղան չնայեց էլ:

— Ախպորդ թակարդը,— ասաց մայրը,— Շուշան մորքուրի սագը բռնել է, ախպերդ ուս է արել, ասում է՝ հայրիկի գալու պատվին եմ արել:— Մայրը ծիծաղեց:

Տղան ուսը ծուլ արավ, բայց հետո տեսավ, որ պիտի պատասխանի: Տղան ասաց.

— Հանդում չեմ ցցվել, որ տեսնես քարից չեմ ընկել ու գելն ինձ չի կերել:

Եվ մայրը տեսավ, որ նրան չի կարող խաբել և չի կարող ստիպել: Մայրը երեխաներին տուն արեց, բազրիքի դուռը բացելով ինքը եկավ կանգնեց քիվի տակ, փռան դեմ, խնամքով, հատ առ հատ, հատիկ առ հատիկ դարսած փայտի մոտ, որի խորանարդը մոր հասակից բարձր էր: Քիվի կաթիլը արևի մեջ մոր վրայով տորքի հենք էր դառնում և կաթիլքի ետևում սիրուն մայրիկը նկարի նման էր: Խորանարդի մոտ, որի մեջ փայտերի կանաչ մորուքները տղան հատուկ խնամքով պահպանել էր, կաթիլքի ետևը մայրը ոտքից ոտքի փոխվեց, ձեռքը ձեռքի մեջ և ձեռքերը կրծքերի տակ ոտից ոտ փոխվեց և տղային խաբելու հայծ չգտավ:— Թույլատրվո՞ւմ է,— արևի մեջ ժպտաց մայրը,— թույլատրվո՞ւմ է քու փետը վառել:

Տղան արհամարհեց:

Գիրկը փայտ առնելով՝ մայրն օրհնեց.

— Օրհնած սրա բերողի կռները, սրա բերողի կանաչ արևը դալարի:

Տղան չլսելու տվեց:

Բազրիքի դռան միջից մայրը ջուր եկավ.

— Ջուր չունենք, գնա ջուրը:

Ինքը իրեն մերժելով մի շալակ բռխի ողորմություն՝ ասես ընտել էր նաև մոր այդ ջուրը.— Որ-



Գլուխը խուզված ու ականջները խոշոր՝ եղբայրը նայում էր դունչը շան պես թեքած, իր երկու թաթիկի արանքից՝ աղջնակի ճակատն ու աչքերը նայում էին բազրիքի վրայով:

— Բան չկա՛, անո՛ւշ,— ասաց մայրը,— սարի սառնամանիք է եղել: Իսկ թե սագի մասին ես մտածում... խոզը որ մորթենք՝ տեղը չորս կլոր միս ենք տալու, խոզի էրաթաթն իրենցն է:

— Իմ ի՞նչ գործն է,— ուսը ծուլ արավ ու ջղընջաց տղան,— տվե՛ք:

— Որ էդպես տնկվելու ու տուն չէիր մտնելու,— կոշտ ու լուրջ ասաց մայրը,— հանդո՞ւմ տնկվեիր:— Տո՛ւն մտիր,— ասաց մայրը,— ի՞նչ ես ցցվել աչքիս առաջ:

դան մեջքը շտկեց ու չպատասխանեց: Դեմքի կեսը՝ արևի մեջ, փայտը՝ գրկին, քիվի տակ մայրը ծիծաղեց ու նորից սկսեց.

— Ախպերդ տանու սագի ուս է արել: Ասում է՝ սագից մենակ բա՞րձ են սարքում, թե՞ կարտոֆի հետ տապակում էլ են:

Իր պատմության վրա՝ եղբոր ծիծաղելի գլուխը դուրս եկավ դռան արանքից և նայեց ականջները երկար ու դունչը թեքած, աղջնակի քթիկը հպվեց պատուհանի ապակուն:

— Թակարդի մեջ քարշ տալով բերեց, թակարդը բացեցինք թե չէ... տո՛ւն արի պատմեմ,— ծիծաղեց մայրը:

Օտար, հեռվից, թշնամանքով, որպես հանցագործը բանտի ճաղերի ետևից՝ տղան նայեց:

— Վախից երեխան սփրթնել էր, որսն էլ կատաղած ճղճղում էր՝ տիրոջ պես,— ծիծաղեց մայրը:— Խուլը քիչ էր, հիմի էլ՝ սագը: Թակարդը բացեցինք թե չէ՝ մի ոտի վրա թեփռին-թեփռին արավ ու թռավ ախպորդ Շուշան մորքուրի դուռը: Ոտն օղում կախվել էր՝ օրորվում էր, մնաս բարով էր ասում,— ծիծաղեց մայրը:— Էդ մի ոտի դիմաց հիմա խուլի գլուխն իրենցն է, խուլի վրա է, բայց արդեն խուլինը չի: Իրենց բաժինը թող գան պոկեն տանեն, մեր բաժինը մենք հունվարից հետո ենք մորթելու, նե՞րս արի,— ասաց մայրը:

Տնից տուն՝ այդ կինը կովի իր բաժինը դեմառդեմ Շուշան մորքուրի հետ կովել վերջացրել էր, հիմա ծիծաղում էր: Երբ համարյա դեռ աղջիկ-աղջնակ էր, աղջկա պես բարակ, նիհար ու վախլուկ այդ կինը երեք-չորս տարի առաջ գիշերը անհետացավ: Երեխաները լվլվում էին, տատը կարծում էր այդ կնոջ մեջ հեռու եկերքների կարոտ ու խելագարություն կար՝ անհայտ կանչերի վրա հիմա վերացել է, պապը չէր կարող ու չէր ուզում որևէ ենթադրություն ու ելք մտածել, որովհետև ծնկների չափ անկոր էր նաև միտքը, և միայն փոքր հորեղբոր հանգիստ, խելացի, երկարուկ դեմքին նայելով էր, որ տղան հասկացավ, թե մայրը գնացել է իրենց կովերի ետևից: Կովերը պահ էին տրված ներքևի տաք ու, ասում էին, առատ գյուղերում, ասում էին՝ կանաչ, ասում էին՝ ապահով, ասում էին՝ բարի... Նիհար, ճողի չափ բարակ այդ կինը պտտվել-պտտվել էր քնած երեխաների վրա մատները բերանն առած և հասկացել, որ գլխին մեծ աղետ է կախված: Լուսաբացին չէր սպասել, քանի որ անհնար էր օձիքից ու վզից պոկել կատվի պես կառչող աղջնակին և փեշը հանել Հրայրի թաթիկներից նույնպես: Չորացեղ էր հասել մի օրում, կովի հետ ետ էր եկել յոթ օրում: Եկան հորեղբոր տան պառխվարին դեմ ընկան ու մնացին: Պառավված, ձեռքերն ուռած, ոտքերն ուռած, աչքերի տակը պարկեր՝ այդ կինը չէր կարողանում աղջնակին գրկած պահել, աղջնակը ձեռքերից ընկնում էր: Նիհար, պառավ, ոսկրացած, որբացած այդ կովը ուզում էր մեռնել, և այդ կինը մրմնջում էր խուլ ու անտարբեր՝ ասես երազում. «Քույրի՜կ ջան, նանի՜ ջան, Աղո՜ւն ջան... չէ՞ իմ երեխեքը մեղք են, չէ՞ դուն իմ երեխեքի նանն ես, նանի՜ ջան»: «Աղջիկներիդ կորցրել ես,— անում, անարցունք, իր ծնկների վրա քնելով լաց էր լինում նա,— սիրուն, նախշուն աղջիկներիդ կորցրել ես, հորթիդ կորցրել ես՝ բողոքելու ուժ չունես, նանի՜ ջան... չէ՞ դու նորից բազմանալու, շատանալու, քու նախրի մեջ թագուհի ես լինելու, Աղո՜ւն ջան»: Կովը ծնելու էր և չէր կարողանում: Պապը, թույլ, հմուտ, լույսի չափ սպիտակ պապը, որը տղայից, տղայի հորից ու մեծ հորեղբորից էլ առաջ հինգ հարյուր կով էր ծնեցրել, ծաղիկների, մեղուների, ծառերի ու կովերի նահապետ սքանչելի պապը չէր կարողանում ծնեցնել. կովը չէր կարենում օգնել պապին: Թույլ դեղին



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



աղվամազոտ այդ գարնան մեջ, առվի քարոտ, արևոտ ափին, հրաշք եղավ. կովը ծնեց: Ճակատը ծաղիկ, պոչը ծաղիկ այդ աղջնակը խրտնում ու փախչում էր արևոտ լանջերով, ճորակի չիմչիրին նուրբ, թույլ մի երկու տերև էր կանաչել. և կովը, որը չէր կարողանում ելնել, մայրը, որը ժպտում էր գլուխը ծնկների վրա, և պապը նայում էին հորթի ետևից:

Այդ կինն այն ժամանակ տատին ասավ... Երբ կովը ծննդյան ցավերի ու իր անկորության արանքում նեղվում էր և տատը բերել, այգու արևոտ ցանկապատին աղոթքով-մրմունջով մոմ էր վառում և արևոտ ճորալանջն այդպիսով աստծու մատուռ էր դարձել, այդ կինն այն ժամանակ իր ծնկների վրայից նայեց, պարկավոր աչքերը հառեց տատի թիկունքին և ասաց. «Էդ՝ աստվածը ես եմ՝ մոմը ի՞մ ոտքի տակ ես վառում»: Տատը «թու-թու» արեց,— թո՛ւ, թո՛ւ, անամոթ,— աստվածային իր աղոթքին իբր չարքի շշունջ էր խառնվում, և նույնիսկ պապը խեթեց աստծու միամիտ նկարի նըման... բայց դա այդպես էր՝ գարնան այդ ճորակի աստվածը այդ կինն էր:

Պատերազմից առաջ՝ տաք, կնգուն, շինարար, առատ ժամանակներում մեղվի երկու փեթակ կապելու դիմաց հորը մի խոզ էին պարտք եղել՝ չընչին մի բան. հայրն ասել էր «վնաս չի, կտաք, էլի», ռանդան գրպանն էր գցել, ուրագը գոտին էր խրել ու ելել, մոռացել. կանաչ առվահար անցյալ ամռանը այդ կինը հիշեց հին պարտքը, գնաց խնդրեց-աղաչեց, կռվեց-սպառնաց թե՝ «ի՞նչ տարբերություն, պարտքը պարտք է, խոզն էլ՝ խոզ» ու ճղավեցնելով բերեց դունչը նարձ ու ականջները կախ այդ խոզը:

Գելը Դանելանց գոմի կտուրը քանդել, գոմն էր մտել ու ամբողջ ոչխարը ջարդել: Պատի անկյունում ախոռի մեջ մնացել էր ծնոտը ջարդած ու բուկը ծակ մի էծ: Գելը նրա դնչից բռնել ու գետնով էր տվել: Դանելանք մորթում էին, այդ կինը չթողեց: Ասաց. «Շինելու բան կունենաք՝ մեր ամուսինը կշինի. էծը տվեք մեկ, կսատկի թե կապրի մեր բախտն է»: Չափարի տակ նա ձյունը ետ տվեց, գետինը քանդեց, բանջարի՝ եղինջի արմատները հանեց ու պղնձի մեջ եռացրեց: Եռման ջրով, իր մատները վառելով, նա լվաց վերքերը և ժանիքի տեղը եռման փալաս խցկեց: Նա ինքը չգիտեր ինչ է անում և տղային չկարողացավ բացատրել իր արածի նշանակությունը: Բայց էծը կա, չի կարողանում մկկալ, միայն լուռ նայում է, բայց պիտի ծնի:

Գոմի ապահով, օջախի չափ սիրելի կենդանությունը այդ կնոջ շնորհիվ է,— նա կարող է ժպտալ նա կարող է ծիծաղել, նա կարող է ծաղրել ուրիշների ճախորդությունը,— գոմը կենդանի է նրա շնորհիվ: Իսկ Դանելանց գոմը այդպես էլ հանգավ. դուռը բաց է և ներսում գայլի քանդած տեղով մեկ ձյուն է նստել:

(Շարունակելի)

ԻՄ ԳԵՂԱՐՎԵՍՏԱՆՈՑԸ







# ՖՐԱՆՍԻՍԿՈ ԳՈՅԱ

*(Մահվան 150-ամյակի առթիվ)*



*Ֆ. ԳՈՅԱ—Ապստամբների գնդակահարությունը 1808 թ. մայիսի լույս 3-ի գիշերը*

Իսպանացի հանճարեղ նկարիչ Ֆրանսիսկո Գոյան ծնվել է 1746 թվին սարագոսացի գյուղացու ընտանիքում: Նա ոչ միայն իսպանական, այլև համաշխարհային կերպարվեստի 18 և 19-րդ դարերի հեղափոխական ու ռոմանտիկական նկարչության հիմնադիրն է և իր ժամանակի մեծ նորարարը:

Նրանից առաջ եվրոպական ոչ մի նկարիչ իր ստեղծագործություններում չի արտահայտել ժամանակի քաղաքական ու պետական ցնցումները, չի պատկերել պատերազմի արհավիրքները, հարազատ ժողովրդի տառապանքները այնպես, ինչպես նա: Իսպանիայի Կարլոս 4-րդ թագավորի պալատական նկարիչը լինելով հանդերձ, Գոյան ծաղրել է ժամանակի թատերաբեմ ելած ապաշնորհ պետական ու քաղաքական գործիչներին: Նրա ստեղծագործություններից առավել հայտնի են «Կապրիչոս» փորագրությունների շարքը, որտեղ նա ծաղր ու ծանակի է ենթարկում իսպանական ինկվիզիցիան և մեծարում է իսպանացի հասարակ մարդկանց, «Կարլոս 4-րդի ընտանիքը», ուր ներկայացվում է թուլամորթ թագավորը, ծույլ ու անբան յուրայիններով, «Պատերազմի արհավիրքները» փորագրությունների շարքը, «Մայիսի 3-ի գնդակահարությունը», որոնց մեջ պատկերված են Իսպանիա ներխուժած ֆրանսիական թագավոր Իոսիֆ Նապոլեոնի զորքերի խժդժությունները:

Գոյան ապրեց մեծ ու փոթորկուն կյանքով, սերունդներին թողնելով իր անմահ գլուխ-գործոցները:

Մեծ նկարչի կյանքին ու ստեղծագործությանն է նվիրված գերմանացի նշանավոր գրող Լիոն Ֆեյխտվանգերի «Գոյա» վեպը: Կարդացեք այն և ձեր առջև կհառնեն մեծ նկարչի տիտանական կերպարն ու իր ապրած մռայլ ժամանակները:

ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ

Վավերից հյութ էր ծորում, ապրիլյան մաքուր լույսի մեջ շողարձակում էր ծիրանենու խեժը, իսկ թաղն ավերող մորեխամպը բնավ էլ մորեխամպ չէր՝ վազող տղաների խումբ էր: Առջևից կաս-կարմիր շապիկով, երկարաոտք, մկանուտ, խսկը կատաղած ձի՝ Հայկն էր: Սամվելը, Եղիշը, Կարոն, մնացածները միասին էին՝ լայն ճակատ բռնած, ուս-ուսի, և միայն Դերենիկն էր պոչից քարշ գալիս՝ կուլ տալով տասնյակ ճիպոտների վեր հանած փոշին:

— Ո՞ւր,— մռլտաց Երանոսը հևասպառ փուլ եկող որդու վրա,— շո՛ւնչ առ, ասա՛, ո՞ւր ես քրտնամխած քշում:

— Էշ են բերել... Մի վագոն...— հոր արգելքը կանխազգալով՝ Դերենիկը թախծոտ նայեց փողոցի ծայրը հասած մորեխամպի ետևից:— Կապույտ կամուրջ... Մի վագոն... Էշ...

— Տո՛ւն,— կարճ կտրեց Երանոսն ու շրջվեց իսկույն, որ չտեսնի խռոված արցունքները: Ցանկապատի ճաղերի արանքից հետևելով տուն մտնող որդուն, նա իսկույն կզաց, որ նախանձի օձը խայթում է սիրտը: «Մշեցի Երվանդի տղան ինչո՞ւ է քեզնից առաջ ընկնում, հը՞: Համավոր հարսի պես ի՞նչ ես գլխկախ տուն գնում, երբ Կապույտ կամուրջ էիր ուզում վազ տալ: Գոնե դիմադրի՛ր, բողոքի՛ր... Վաղը, մյուս օրը ոտի տակ կկորչես...»

Օրը կես էր դառնում, ուր որ է Երևանից պիտի գար գնորդը: Տունը վաճառելու որոշումը Երանոսը նույնիսկ կնոջը չէր վստահել,— կնոջն ես ասել, թե ողջ թաղին՝ մեկ չէ՞,— ներքուստ վախ ուներ, որ եթե մեկնումեկն իմանա, գործը գլուխ չի գա:

# ԿԱՐՈՏ

*ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ*

Ծերացած թռչունի
աչքերը մթնել են
՛սարերի կարոտից,
թևերը հոգնել են
թռիչքից հեռավոր:

Սարերը լցվել են
բուրմունքով խոտերի,
Նորելուկ ամպերը
անհանգիստ վազում են
անդունդի եզրերով:

Քմահաճ օդի դեմ
թռչունի հայացքը
դարձել է վախվորած՝
ձագերը նա չնկան
սարերի երկնքից:

Դաշտերը գնում են
դեպի նոր լուսաբաց,
Նիհարած գետի մեջ
ձկները մաշվում են
թռչելու կարոտից:

երկուսն իրար ետևից, երրորդը՝ քիչ ուշացած: Փողոց խուժած թաղեցիները երկնքում տեսան ծխի երեք քուլա և համոզվեցին, որ մշեցին այս գարնանն էլ սպանեց աստծուն:

«Սրանք էլ չեն ցրվի,— անհանգստացավ Երանոսը,— բան ու գործերը թողած՝ մինչև իրիկուն կքըր-

# ԱՊՐԻԼ

*ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

«Փող է կուտակել, ի՞նչ փող է կուտակել: Ծախսելու տեղ չունի, տրաքվում է գող-ավազակը, որոշել է տուն առնել: Կծախեմ, վաթսուն-յոթանասուն հազարով կծախեմ: Ինչ գին ասեմ՝ կտաս, լավ էլ կտաս,— հոխորտաց Երանոսը,— որովհետև փողդ քրտինքով աշխատած փող չի...»

Ցանկապատի վերջին ճաղերն էր ներկում Երանոսը, երբ երկփողանին ուսած իր տան կտրանը հայտնըվեց մշեցի Վահրամը:

«Ժամանակ գտա՞ր դու էլ, խելա՛ռ Վահրամ»,— փնթփնթաց Երանոսն ու վրձինը դույլը գցելով, ներկոտ մատները փութով ականջները խոթեց: Մեկ, երկու... երեք՝ կրակոց բաց թողեց Վահրամը. առաջին

քըրեն հայոց հարցերը, իսկ միլիոնատերս ուր որ է կգա: Սրանց աչքից բա՞ն կպրծի... Է՜, թող չպըրծի,— բողոքեց Երանոսը,— իմ տունը չէ՞, կուզեմ կծախեմ, կուզեմ էլի կապրեմ մեջը»:

— Ես ներկը ցախատո՛ւն տար,— կրակոցների ձայնից պատշգամբ ելած որդու կողմը բղավեց Երանոսը, աչքը չկտրելով կտրանը քարացած Վահրամից: «Քառասունհինգ տարի է երեքական փամփուշտ ես կրակում օդում,— մշեցուն շշպռեց Երանոսը,— ժամանակին հարյուր քսան փամփուշտ ունենայիր, երևի թե չխելառեիր»:

— Ինչո՞ւ չթողիր գնամ, մի էշ էլ ես բերեմ,— քիթը վեր քաշեց Դերենիկը:



— Ասել են, դու էլ հալած յուղի տեղ ես ընդունե՞լ,— որդու կողմը դարձավ Երանոսը,— ի՞նչ էշ, ի՞նչ բան, ո՞վ է տեսել վագոնով էշ բերեն, բաց թողնեն դաշտում:

— Հիմա կբերեն՝ կտեսնես:

Հրացանը տանը թողնելով, Վահրամը փողոց ելավ, նստեց ղաղձի ծիլերով կանաչած առվի թմբին, և դա նշան էր, որ հրավիրում է նստելու նաև հարևաններին:

— Հիմա կբերեն՝ կտեսնես,— ոնց որ խպպացող, փչացած ձայնասկավառակ, կրկնեց Դերենիկը:

— Թո՛ղ բերեն,— պայթեց Երանոսը,— ամեն մեկը թող տասը էշ բերի: Իսկ քեզ էշ պետք չի... Մեզ էշ պետք չի...— Երանոսը հազիվ զսպեց իրեն, որ բերանից չթռցնի գաղտնիքը: «Պետական տանն ենք ապրելու, տղա՛,— մտքում բղավեց Երանոսը,— պաղ ու տաք ջրերով, գազով, հեռախոսով, էշն ի՞նչ է անելու էդ բաների մեջ...»— Քեզ ասել էի՝ հաշվի՛ր ծառերը,— հիշեց Երանոսը,— հաշվե՞լ ես:

Տղան գրպանից տետրակի ծալծլված մի էջ հանեց, շտկեց ծալերը, կարդաց.

— Ծիրանի ծառ՝ տասնյոթ հատ, դեղձի ծառ՝ ինը, սալորի ծառ՝ չորսը, խնձորի ծառ՝ երկուսը, ընկույզի ծառ՝ մեկը, թթի ծառ՝ երկուսը (մեկը՝ սև, մյուսը՝ սպիտակ), բալի ծառ՝ չորսը... Լսո՞ւմ ես էշերի դոփյունը...

— Ականջներդ են դոփդոփում... ուրի՞շ:

— Տասնչորս խաղողի վազ, քսան մարգախնձոր, վարդի վեց թուփ, յասամանի՝ երեք:

— Ապրե՛ս,— գովեց հայրը,— հարյուր հազար էլ պահանջեմ՝ պիտի տա... Դե, տա՛ր էս ներկը, տա՛ր, խելո՛քս...

Եվ երբ մենակ մնաց, ականջին հասավ Վահրամի ձայնը.

— Հակոբը, տղե՛րք,— ամեն տարվա նույն պատմությունն էր անում Վահրամը,— դիրքերից կանչված հրամանատարներին հարց տվեց. «Փամփուշտների մեր պաշարով մենք վաղը մինչև կեսօր հազիվ թե դիմանանք, հետո՞ ինչ անենք»:

«Ամեն մեկս եթե տասական փամփուշտ ունենանք, կճեղքենք թուրքերի դիրքերը, կհասնենք Սասուն»:

«Քանի որ փամփուշտ չունենք և հաստատ համոզված ենք, որ ո՛չ այս գիշեր, ո՛չ վաղը օգնություն չի հասնելու, հարմար ենք գտնում դուրս գալ Մուշից»:

«Ես էլ եմ այդ մտքին,— ասաց Հակոբը,— բայց դա ես չէ, որ պիտի ասեի: Տարիքս,— ասաց,— անցել է հիսունից, դուք երիտասարդ եք, եթե ազատվեք՝ ազգին կրկին օգուտ կտաք»:

«Հենց այդ գիշեր, տղերք, բոլորս նահանջեցինք: Իսկ Հակոբը մնաց...»

— Վահրա՛մ,— այլևս չդիմացավ, ցանկապատի մոտից ձայն տվեց Երանոսը,— սրանք, ասենք, չեն հիշում, ոնց են ասում, հա՛, սկլերոզ ունեն, բայց դու հո, հիշո՞ւմ ես, որ քառասուն անգամ պատմել ես նույն բանը: Անգիր ենք արել, հե՛ր օրհնած, ոնց որ «Շունն ու կատուն»: «Ուզո՞ւմ ես, շարունակեմ պատմությունդ:— Երանոսը մաքրեց կոկորդը, թքեց ու ճիշտ ընդհատված տեղից շարունակեց պատմությունը՝ կեղծելով ձայնը, որ իբր նմանվի Վահրամի ձայնին.— Առավոտյան մթնշաղին Շենիկ ու Սեմալ գյուղերի վերևում հանդիպեցինք սասունցի պահակներին, որոնք, կարծես, ոչինչ էլ չգիտեին քաղաքի կռվի մասին: Երբ մեզ տեսան՝ զարմացան, սկսեցին լաց լինել: Մենք էլ էինք լաց լինում... Ճիշտ չե՞մ պատմում:

— Չէ՛,— ասաց Վահրամը,— դու այնտեղ չէիր:

— Իհարկե, այնտեղ չէի,— ծիծաղեց Երանոսը,— ես չեմ ասում՝ այնտեղ էի, ես քո պատմությունն եմ անում:

— Դու իմ պատմությունը մի՛ արա, Երանո՛ս,— նեղացած ոտքի ելավ Վահրամը,— դու քո՛, քո՛ պատմությունն արա:

Հարևաններին այնպես թվաց, թե Երանոսը խեղճացավ, կծկվեց,— մտածեցին ո՞վ գիտե ինչ մեղքեր են թաքնված անցած օրերի ծալքերում, որ հայտնի են միայն Վահրամին, այլապես ի՞նչ էր ակնարկում՝ թե քո՛, քո՛ պատմությունն արա: Դե, էլի՛ չարախնդա, էլի՛ ծիծաղիր, Երանո՛ս, ի՞նչ ես պապանձվել...— Այնինչ Երանոսի բերանը փակողը ճանապարհի փոշուց դուրս պրծած ու նրա տանը մոտեցող մեքենան էր...

Հարևանները չհասցրեցին էլ ցրվել՝ այնքան արագ կատարվեց ամեն ինչ: Դեռ նոր էր գլուխը կորցրած Երանոսը հյուրին ներս տարել, երբ փողոց նետվեց Աշխենը.

— Վահրա՛մ եղբայր,— գոռաց նա,— սխպրտի՛ք, գժվել է, խելքը թռցրել է էս մարդը... Տունն է ծախում, տո՛ւնը...

Տղամարդիկ սարսռեցին Երանոսի կնոջ ձայնից, Աշխենն այդ կերպ երևի մեկ էլ Երանոսի մահը կողբար:

— Հարյուր հազարով տունը ծախում է...

— Հարյուր հազարո՞վ,— ապշեց մշեցի Երվանդը

և էլի բան պիտի ասեր, բայց աչքն ընկավ Վահրամի մթնած դեմքին, լռեց:

Երանոսի տան արժեքը բոլորին էր շշմեցրել: Հարյուր հազա՞ր: Իրենց տներն էլ, ուրեմն, այդքան արժեն: Այսպե՞ս, ահա, ամբողջ կյանքդ միամիտ, անտեղյակ կարող ես ապրել տանդ՝ չիմանալով, որ կոպեկ-կոպեկ հավաքածդ արժե հարյուր հազար: Նրանք դեռ գլխի չէին ընկել, որ իրենց ապշեցնողը ո՛չ թե հարյուր հազարն է, այլ այն միտքը, որ տունն, առհասարակ, գին ունի ու կարելի է ծախել:

— Չե՛մ թողնի,— Վահրամի թևին փղձկաց Աշխենը,— հարյուր միլիոնով էլ չեմ թողնի...

Վահրամը հարևանուհուն իր տուն հասցրեց, հանձնեց կնոջ խնամքին ու, հրացանն ուսն առած, ետ եկավ տղամարդկանց մոտ:

— Գնացի՞նք,— ասաց նա վերջին կռիվ գնացողի պես, և տղամարդիկ այդպես էլ ընկալեցին նրա կոչը:

— Հրացանը տա՛նը թող, Վահրա՛մ,— կցուշացան նրանք,— հրացանի դեպք չի:

— Դատարկ է,— քթի տակ ասաց Վահրամը, որպես ապացույց չխկչխկացրեց ձգաններն ու ընկավ առաջ: Կոշիկի ծայրով նա լայն բաց արեց ցանկապատի դռնակը, դիտավորյալ թփթփացրեց բակում, բայց նրա աղմուկի վրա միայն Դերենիկը հայտնվեց:

— Այգում են,— գլխով արեց տղան,— ծառերն են հաշվում...

— Ընկերների՛դ մոտ գնա,— ասաց Վահրամը Դերենիկին,— ու չվախենաս, եթե կրակոց լսես:

— Տղերքը Կապույտ կամուրջ են գնացել,— ասաց տղան:

— Դո՛ւ էլ գնա Կապույտ կամուրջ:

Յասամանի ծաղկած թփի մոտ Վահրամը կանգնելու նշան արեց, սպասեց այնքան, մինչև Դերենիկը հեռանա բակից, հետո բոլորի համար անսպասելի հրացանը վեր տնկեց, կրակեց: Այգու խորքում խուճապահար թպրտոց լսվեց ու Երանոսի՞, թե՞ եկվորի սարսափած ճիչը:

— Երանո՛ս,— բղավեց Վահրամը,— հիշո՞ւմ ես, Երանո՛ս, թե ով շարեց տանդ պատերը:

Սկզբում Երանոսը, հետո նաև եկվորը դուրս եկան դեղձենու ետևից, թափ տվեցին շալվարի ծնկամասերը, հիմար-հիմար ժպտացին՝ իբր բոլորովին չեն վախեցել, հասկացել են, որ կատակում է Վահրամը:

— Հա՛, հիշում եմ, Վահրա՛մ... Բայց ինչո՞ւ ես կրակում... Դո՛ւ շարեցիր:

— Ես շարել եմ, ես էլ կքանդեմ,— որոտաց Վահրամը:— Իսկ հիշո՞ւմ ես, Երանո՛ս, թե ով կապեց տանիքդ, հատակդ:

— Վարպետ Ենոքը... Հիշում եմ... Ենո՛ք, դու էիր, չէ՞:

— Ես կապել եմ, ես էլ կքանդեմ,— Վահրամի միտքը հասկանալով վրա բերեց Ենոքը:

— Ես էլ պատուհաններն ու դռներն եմ շինել,— հաճույքով բղավեց մշեցի Երվանդը,— և պատի տակի նստարանը:

— Մարդավարի ասեիք՝ կտայի վարձը, էլ թատրոն սարքե՞լս որն է,— սրտնեղած մոտ եկավ Երանոսը:— Ես էլ ձեր տների վրա եմ գործ արել...

— Տունդ, ուրեմն, չկա,— ամփոփեց Վահրամը,— մնաց հողը, իսկ հողը, ինչպես դու գիտես, վաճառքի ենթակա չէ: Հա՛, մեկ էլ հորդ գերեզմանը մնաց: Եթե այս մարդը համաձայն է՝ ծախի՛ր նրան հորդ գերեզմանը:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Վիրավորանքից ատամները կրճտացնելով, Երանոսը քայլ արեց դեպի Վահրամը, բայց ոտքը դեմ առավ առվի թմբին, ընկավ բերանքսիվայր:

Նա չտեսավ, թե ինչպես այգուց փախավ եկվորը, և թե ինչպես նա չէր կարողանում տեղից շարժել մեքենան, որովհետև շրջապատված էր թաղի տասնյակ տղաներով, ամեն գարնան հետ էլի մի թիվ մեծացած տղաներով:





*ՍԱՂԿԱՁՈՐՈՒՄ — Ավետիս Փոշօղլյանի ներկայությամբ բարձրաձայն ընթերցում են նրա բանաստեղծությունները։*

# ԱՐԵՎԻ ԴԵՐԸ

**Թող ելլե արևը հիմա**
**Կարմիր այտով,**
**Անմեղ դեմքով,**
**Թող ելլե արևը հիմա,**
**Լուսաբացին թող լվա աշխարհը խաբեբա,**
**Անոնց խորամանկությունները, գեշությունները,**
**Նենգությունները...**
**Թող ելլե արևը հիմա**
**Իր անմեղ ոճով,**
**Բարի սրտով,**
**Թող քանդի անհավասար կյանքը,**
**Կյանքը... որուն մեջ աշխարհ ընկած է։**
**Թող ելլե արևը հիմա, անմեղ։**

Մռայլ երանգներով պարուրված այս բանաստեղծությունները պատկանում են բեյրութաբնակ տասներկուամյա Ավետիս Փոշօղլյանին։ Պատանին տեսել է Լիբանանի և Իսրայելի միջև բռնկված պատերազմի սարսափները, ենթարկվել Լիբանանում սկիզբ առած քաղաքացիական կռիվների արհավիրքներին։ Նա հասկացել է և իր բանաստեղծություններում ընդվզում է այն անարդարությունների դեմ, որոնք տիրող կարգերի արգասիքն են։



# ԱՆՁՐԵՎ

*ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ*

*Ամպերը տխուր շարժվում էին, և արևը կորչում էր ու գտնվում։ Ամեն ինչ թաց էր, ամպի պես տխուր։ Երեխաները, աթարի տափակ, կլոր հրապարակի վրա խաղում էին։ Գյուղամիջում հավաքվել էին տղամարդիկ։ Երեխաները մրսում էին և բարկանում ամպերի վրա, որոնք հաճախ պահում էին արևին։*

*Գյուղում նոր տներ էլ կային, երկհարկանի, զեղեցիկ, որոնց ներքնահարկերը գոմեր էին։ Հին տների կտուրներին խոտ էր աճում, առատ ու հյութալի, որովհետև ձմռանը այնտեղ գոմաղբ էին լցնում, բահով սփռում տափակացնում։ Հին տներում ապրողները կովեր շատ ունեին և նրանց բոլորի բակերում կային գոմաղբի հրապարակներ։*

*— Գարունը, լավ է, շուտ եկավ,— ասաց Պողոս Վարժապետյանը։— Հիմի ձմեռները կարճ են լինում։*

*— Հա՛,— ասաց նախագահ Մերոն,— էգուց-մյուս օրը գոմաղբը դաշտերը տանենք, ժամանակն է։ Անձրևները կտեղան, գոմաղբը կներծծվի հողի մեջ։*

*— Հա՛, հա՛,— ասաց Սարգիսը։— Անցյալ ձմեռը չէ՞ր մինչև մայիս ձյուն կար։ Դեռ մարտն է, մեկ էլ տեսար նորից ձյուն եկավ։*

*— Չէ՛,— մնդեց Պողոս Վարժապետյանը,— էլ չի գա։ Երեկ ռադիոյով լսեցի, ասում են՝ եղանակը էսպես էլ կգնա։ Չորս-հինգ օրից գուցե դեռ տաքանա էլ։*

*— Այ մա՛րդ,— ձեռքերը թափ տալով ասաց Սարգիսը,— ի՞նչ տաքանալ, շատ էլ ռադիոն ասում է։ Էդպես էնքան են ասել ու ճիշտ դուրս չի եկել։*

*— Պողո՛ս, տղի՛ղ նայիր,— ասաց նախագահ Մերոն,— տես ո՞նց է փայլում։ Ասում են, ոտանավորներ է գրում, հա՞։*



# ԱԶՆՎԱԿԱՆԸ

Մաքուր, կոկիկ
Ակնոց մը քթին,
Վերարկու մը նոր,
Կոշիկ մըն ալ թանկ...

Մարդ է ան մարդը,
Ազնվական է,
Բայց սուտ, նե՛նգ,
Քեզ հետ լավ կըլլա,
Բայց կեղծ է,
Գեշ է, գեշ...

Կը մտածե դրամի,
Կոտարանա դրամի,
Կխելագարվի դրամի:

Քեզ կը լացնե օրե օր,
Ինչո՞ւ...
Դրամ է, դրամ...
Ազնվական է
Գեղեցիկ, մաքուր,
Բայց մա՞րդ է, մա՞րդ...

# Ճակատնիդ պսակեց՛ք ոսկեզօծ

Աշխարհի չորս կողմեն թող գան,
Տեսնեն Արարատը...
Ինչպես անոր պես բարձր Թումանյանը,
Քուչակի տաղերը,
Չարենցի պոեմները համայն:

Միշտ պետք է հիշենք
Նահատակվողները հայրենի.
Զեյթունի քաջերը, Սասունի, Մուսայի,
Վանի, Մուշի...
Քաջերը, որոնք մեռան հայրենիքի համար,
Սարդարապատը,
Ուր ամեն մարդ՝ մեծ, պստիկ, ծեր, կին, մանուկ
Կռվեցան, վերջին արյունը թափեցին...

Դուք՝ նոր սերունդ,
Ճակատնիդ պսակեց՛ք ոսկեզօծ,
Ինչպես Անդրանիկը իր սրով,
Ինչպես Աբովյանը՝ իր «Վերքով»,
Ինչպես Թումանյանը՝ իր տաղերով...



*Պողոս Վարժապետյանը նայեց, գոմաղբի հրապարակում խաղացող երեխաների մեջ գտավ իր տղային և աչքերի ու բերանի անկյուններով մանրիկ ժպտաց.*

*— Հա՛,— ասաց նա,— կխաղան, երեխա են...*

*— Հե՛,— ասաց նախագահ Մերոն,— մենք որ երեխա էինք, սոված ման էինք գալիս, դաշտերում հողի մեջ մնացած կարտոֆիլ էինք ժողովում բերում ուտում:*

*— Այո, ուտում էինք ու վար անում,— ընդհատեց դարբին Առաքելը:*

*— Հա՛,— շարունակեց նախագահ Մերոն,— գընում էինք, ամբողջ օրը անոթի-ծարավ վար անում, իրիկունն էլ գալիս, թե մի բան կար՝ ուտում էինք, չըկար՝ էդպես էլ անոթի քնում էինք: Հացը սև աղվես էր:*

*Ամպերի մեջ կորած արևը երևաց, և երեխաները գոռգոռացին, գլուխկոնծի տվեցին աթարի հրապարակում:*

*Նրանք կոխկրտում էին աթարը, որի երեսին ժանգագույն անձրևաջրի մեծ ու փոքր լճակներ էին գոյացել: Անձրևաջրերի լճակները փայլփլում էին, խուտուտ տալիս փոքրերի ու մեծերի աչքերը: Երեխաները բարկանում էին և, անդրավարտիքները մինչև վերջ քշտած, կատաղի կոխկրտում անձրևաջրերի միջի արևները:*

*— Մարդ թե սրանց պես ապրի, մեծանալ չի ուզենա,— ասաց Պողոս Վարժապետյանը:*

*Արևը մտավ ամպի տակ, և անձրևի փոքրիկ լճակներում արտացոլվեցին ամպերը, երկնքի կապույտի պատառիկների հետ:*

*Տղամարդիկ նայեցին սարի կողմը և հեռվից-հեռու տեսան անձրևը: Երեխաներն էլ էին տեսնում, բայց նրանք ուզում էին, որ անձրևը հեռվով անցնի, մշուշի գծից էն կողմը, որպեսզի շարունակեն խաղալ: Մշուշի ամենահեռու և ամենամոտիկ գիծը գյուղի վերևի փոքրիկ աղբյուրի մոտ էր: Դա էլ ինչքա՜ն էր հեռու որ... Այդտեղից երևում է նախիրը, հորթերն ու ոչխարները նույնպես: Հեռվի սարի ձյունը երևում էր մշուշի պես:*

*Անձրևը ծանր-ծանր մոտեցավ, ծանր կաթիլներով իջավ, և հետզհետե արագացավ:*

*Երեխաները ցրվեցին տները, որպեսզի պատու-*

# Նամակ «Пионер»-ի խմբագրությանը

«Ամբողջ օրը ես դաս եմ սովորում: Գոնե դրանից հետո «հինգեր» ստանայի, այնքան էլ ցավ չէր լինի, թե չէ միայն «երեքներ» են. նույնիսկ «չորս» հազվադեպ եմ ստանում: Լրիվ կորցրել եմ հետաքրքրությունս սովորելու նկատմամբ: Միայն պատմությունն ու գրականությունն եմ առաջվա պես սիրում:

Երբ դուք իմանայիք, թե ինչպես կցանկանայի հետաքրքիր, ուրախ ապրել, ամեն ինչ հասցնել. գնալ թատրոն, կինո, ցուցահանդեսներ, գրքեր կարդալ, սպորտով զբաղվել... Իսկ որտեղի՞ց ժամանակ գտնել: Ամեն օր ինքս ինձ ասում եմ, որ վաղվանից սկսելու եմ ճիշտ ձևով ապրել՝ ռեժիմով, բայց գալիս է «վաղը», ու ամեն ինչ մնում է առաջվա նման:

ՎԱԼՅԱ Ս., ք. Ալմա-Աթա»

Հավանաբար շատ դպրոցականներ կուստորագրեին այստեղ տպագրված նամակի տակ, որ Ալմա-Աթայից «Пионер» ամսագրին է ուղարկել Վալյա անունով մի աշակերտուհի: Վալյայի նամակին պատասխանել է մանկավարժական գիտությունների թեկնածու, ընդհանուր և մանկավարժական հոգեբանության ինստիտուտի ավագ գիտաշխատող Աիդա Վասիլևնա Զախարովան:

Հրավիրում ենք մեր ընթերցողներին, Վալյայի նամակն ու նամակի պատասխանը կարդալուց հետո, խմբագրությանը գրել իրենց կարծիքը՝ փորձե՞լ եք օրվա ռեժիմ սահմանել ինքներդ ձեզ համար, եթե ոչ՝ ապա փորձեք, եթե՝ այո, ապա գրեք արդյունքի մասին:

«ՊԻՈՆԵՐ»-ի խմբագրություն

հաններից դիտեն անձրևը: Հեռվի մշուշի գիծը մոտեցել էր, խտացել:

Տղամարդիկ էլ մտան գրասենյակի առջևի ծածկի տակ, գլխարկները քաշեցին աչքներին, կկոցած աչքերով նայում էին անձրևին: Առատ անձրև էր տեղում, սկզբում կարկտախառը, հետո՝ առանց կարկուտի: Խակույս գետնի փոշեգույնը դարձավ սև և հետո արդեն՝ ցեխ: Վերևից շխկշխկալով հեղեղ եկավ, ճամփամիջերում կուտակելով քարեր: Հողի հին նստվածքը, որի վրա, երևի, դար էլ էր նստել, մաքրվեց և երևացին հողի միջի անգույն, անփայլ քարերը:

Տների առջև երևացին թիկնոցները գլխներին առած տղամարդիկ և կանայք: Նրանք ցախավելներով ու բահերով դուրս էին մղում բակերում հավաքված անձրևաջուրը: Բոլոր ճամփաներով հեղեղ էր իջնում, հետն առած բերելով ինչ պատահեր, կուտակելով բեռածը գյուղամիջում, տների պատատակերին և քարակույտերի շուրջ:

Երեկոյան դեմ անձրևը քաշվեց: Երեխաները խաղերը շարունակելու համար դուրս եկան տներից՝ ոտաբոբիկ, հացակտորներ ձեռքերին:

Գյուղամիջում երևացին սապոգներով տղամարդիկ՝ մտածկոտ, մտահոգ դեմքերով, որպեսզի հավաքվեն, խելք-խելքի տան, որոշեն վաղվա անելիքները:

# Ինչպես կազմել օրվա ռեժիմ

Շատ տխուր բան է ռեժիմը, եթե վատ է մտածված: Հիանալի բան է ռեժիմը, եթե լավ է մըտածված:

Ռեժիմ կազմելիս սկսիր... հետաքրքրություններից: Որոշի՛ր, թե առանց ո՞ր սիրելի զբաղմունքներից չես կարող ապրել, առանց ո՞ր զվարճությունների կյանքդ կդառնա միապաղաղ ու տխուր: Չես կարող առանց սպորտի՝ շաբաթվա մեջ երկու երեկո հատկացրու սպորտի՛ն: Շատ ես սիրում թատրոնն ու կինոն՝ քեզ հետաքրքիր ոչ մի ներկայացում ու կինոֆիլմ բաց մի՛ թող: Այդ դեպքում դու շաբաթվա մյուս օրերին ավելի հավաք և ուշադիր կլինես, դասերը պատրաստելիս ուշադրությունդ չի շեղվի: Ոչ բոլոր առարկաներն ենք մենք հեշտությամբ ընկալում: Պատմությունից ու գրականությունից, քանի որ սիրում ես այդ առարկաները, աշխատի՛ր «հինգեր» ստանալ: Դա քեզ ուրախություն կպատճառի, կնվաճես ընկերների և ուսուցիչների հարգանքը: Դու ավելի վստահ կզգաս քեզ դասերի ժամանակ և, երևի, այդ վստահությունը կօգնի ավելի դյուրությամբ ըմբռնելու քեզ համար դժվարամատչելի առարկաները: Այդպես հաճախ է պատահում: Դպրոցական ծրագրում եղած բոլոր առարկաները անպայման պետք է սովորել: Առանց այդ գիտելիքների ժամանակակից մարդը ապրել չի կարող: Բայց եթե մաթեմատիկայից ու ֆիզիկայից դու քրտնաջան աշխատանքով ձեռք բերված «երեքներ» ունես, չպետք է տխրես նման «երեքներից»:

Օրվա ռեժիմը չպետք է շատ խիստ, րոպե առ րոպե հաշվի առնելով կազմել: Հիմնականում նշի՛ր, թե երբ պետք է անես ամենաանհրաժեշտ ու կարևոր գործերը: Այն, ինչ նշել ես, պետք է անպայման կատարես: Դրա համար անհրաժեշտ է, որ սովորես «պետք է»-ն տարբերել «ուզում եմ»-ից: Կարո՞ղ ես դու նըստել դաս պատրաստելու, քանի որ դա պետք է, չնայած քո «ուզում եմ»-ը կանչում է քեզ զբոսնելու կամ հեռուստացույց նայելու: Դրան վարժվելը այնքան էլ հեշտ չէ, այդ պատճառով էլ կոփի՛ր կամքդ: Քո առջև մի ո՛րևէ խնդիր դիր, օրինակ, անպայման սովորել ֆիզիկայի ամենից ավելի դժվարամատչելի մի բաժին, և կատարի՛ր առաջադրանքդ մինչև վերջ: Եթե միանգամից չստացվի, նորի՛ց փորձիր: Հետո ինքդ քեզնից գոհ կմնաս: Նույնիսկ ոչ նրա համար, որ լավ գընահատական ես ստացել, այլ որ կարողացար հաղթահարել քո քմահաճ «ուզում եմ»-ը:

ԺՊԻՏՆԵՐ

## ՓՈԽԱՆՑԻԿ ՄՐՑԱՆԱԿ

1954 թ. շախմատի աշխարհի էքս-չեմպիոն Մաքս Էյվեն այցելում է Ավստրիա: Քաղաքներից մեկում տեղի ակումբի գրոսմայստերների հետ հանդիպում ունենալուց հետո, ինչպես է լինում, կորցնում է գլխարկը: Նրան նոր գլխարկ են տալիս:

— Երբ հին գլխարկս գտնըվի,— կատակով ասում է նա,— օգտագործեցեք իբրև փոխանցիկ մրցանակ:

Կորած գլխարկը գտնվում է: Եվ 1955 թ. նույն քաղաքում իրոք տեղի է ունենում մրցաշար, որտեղ իբրև փոխանցիկ մրցանակ հանձնըվում է աշխարհի էքս-չեմպիոնի գլխարկը:

## ԿՈՐԱԾ ԽԱՌԱՏԸ

Հայտնի ֆիզիկոս Հենրիխ Հերցը երիտասարդ ժամանակ սիրում էր խառատությունը: Նրան խառատություն սովորեցնող վարպետը, երբ տարիներ հետո իմացավ, որ Հերցը պրոֆեսոր է դարձել, դժգոհ տարուբերեց գլուխը.

— Ափսո՜ս, նրանից հրաշալի խառատ դուրս կգար:

## ՍՏՈՒՅԳ ՊԱՏԱՍԽԱՆ

Ալեքսանդր Սերգեևիչ Պուշկինը հաճախ էր ծանոթներին կարդում իր ազատամիտ բանաստեղծությունները: Դրա համար նա աքսորվում է: Ճանապարհին, Կիևով անցնելիս, բանաստեղծը հանդիպում է բարեկամներից մեկին: Վերջինս զարմացած հարցնում է, թե ինչը քեզ այստեղ հասցրեց, Պուշկի՛ն:

— Լեզուս,— ժպտալով պատասխանում է բանաստեղծը:

ԺՊԻՏՆԵՐ



# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՄԱՐԴՆ ՈՒ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԲԱԺԱՆ ԵՆ

Տասը տարի առաջ, երբ շահագործման հանձնվեց Երևանի № 186 դպրոցի շենքը, նրա շրջակայքը տակավին ամայի էր ու քարքարոտ: Ուսուցիչների և աշակերտների ջանքերով, դպրոցի դիրեկտոր ընկեր Մոսինյանի գլխավորությամբ, դպրոցի շրջակա քարակույտերը մաքրվեցին, և շուտով տեղը այգի ընտեղծվեց:

Այժմ ամռան արձակուրդներին դպրոցամերձ այդ այգին վեր է ածվում պիոներական ճամբարի, և ծառ ու թուփ նորից իրենց բարեկամների ու խնամողների հետ են: Իսկ բերքահավաքի ժամանակ առաջին մրգերն ուղարկվում են այն մանկապարտեզին, որի շեֆն է № 186 դպրոցի Արտեմ Միկոյանի անվան պիոներական դրուժինան: Առաջին միրգը քաղելու պատվին արժանանում են լավագույն պիոներները:

Ճյուղերը, ոստերն ու կոճղերը անշունչ փայտեր չեն, այլ «կենդանի էակներ»: Մի ոստը նման է երգող կարապի, մյուսը՝ ջրահարսի, մի կոճղ իսկ և իսկ Ռոդենի «Մտածողին» է հիշեցնում:

№ 186 դպրոցի աշակերտներից յուրաքանչյուրը, վերադառնալով պիոներական ճամբարից կամ տուրիստական արշավից՝ «Անտառային ձայներ» ակումբին որևէ կենդանու, առարկայի նմանվող ոստ, կոճղ, ճյուղ է բերում: Երբեմն հարկ է լինում այդ ճյուղերի վրա աշխատել: Այստեղ արդեն օգնության են գալիս դպրոցի նկարչական խմբակի անդամները: Վրձնի մեկ-երկու հարված, և ճյուղը կամ կոճղը ստանում է այնպիսի տեսք, որ կարող է իր տեղը գրավել «Անտառային ձայներ» ցուցահանդեսի ցուցափեղկերում: Ամենաուրախալին ու գովելին այն է, որ ոչ մի դպրոցական երբեք կանաչ ճյուղ չի պոկում՝ ինչքան էլ այն գրավիչ պատկեր հիշեցնի: Մեկընդմիշտ սահմանված է. ցուցանմուշները հավաքել միայն չորացած ճյուղերից և ծառերից:

«Անտառային ձայներ» ցուցահանդեսը ձների լուռ երաժշտությամբ է ներկայացնում կենդանիներին: Միայն մարտի 19-ին՝ «Թռչունի օրը» դպրոցի շենքը գրնգում է թռչունների ճռվողյունից: Թռչուններն անհանգիստ դեսուդեն են ընկնում վանդակներում: Հայաստանում բնակվող թռչուններին ցուցադրելուց և ներկայացնելուց հետո, ուսուցչուհիներ Մարգո Հարությունյանը, Լիդա Գրիգորյանը և Ռոզա Աթանեսյանը, որոնց օգնությամբ է կազմակերպվում այս միջոցառումը, երեխաներին պատմում են թռչունների տարբեր տեսակների մասին, ծանոթացնում են նրանց ապրելակերպին ու սովորույթներին:

— Համեցե՛ք մեր ծաղկի տոնին,— հրաժեշտի ժամանակ ասում է ավագ ջոկատավարուհի Մելանյա Կարապետյանը,— մենք կաշխատենք հաճելի անակընկալներ մատուցել ձեզ:

Երբ դպրոցից դուրս ես գալիս, ուրախությամբ մտածում ես, որ ասֆալտը թեև ծածկում է հողը, բայց չի կարողանում մարդուն կտրել հողից, բնությունից, խզել նրանց փոխադարձ սերը:

*Հ. ՀԱԿՈԲՅԱՆ*

Դպրոցական «Կարմիր գիրք»



## ՇՈԲԵՐԻ ԲՈՐԱԿԱԹՈՒՓ

*Տիպիկ անապատային բույս է: Հանդիպում է անապատային ու կիսաանապատային շրջաններում: Գիտական լեզվով կոչվում է Շոբերի նիտրարիա:*

*Զույգատերևազգիների ընտանիքին պատկանող 1—2 մետր բարձրությամբ թուփ է՝ փշոտ ճյուղերով և սպիտակ կեղևով: Տերևները մսալի են, մանր, երկարավուն, թիանման, հիմքում՝ նեղ, լայնացած, բութ գագաթով: Ցողունի վրա նստած են փնջերով: Կարճ կոթունավոր ծաղիկները հավաքված են ճյուղավոր, խընունջանման ծաղկաբույլերում: Պսակաթերթիկները մանր են, դեղնականաչավուն: Պտուղը նարնջագույն է կամ մուգ կարմիր: Հարուստ է վիտամիններով, Աֆրիկայի և Մոնղոլիայի անապատային շրջանների բնա-*

կիչները այն օգտագործում են որպես սննդարար և ուտվող պտուղ: Դրանով հաճախ կերակրում են նաև ընտանի կենդանիներին: Մեզ մոտ նույնպես բորակաթփի պտուղներն օգտագործում են մուրաբա, չիր, մրգահյութեր պատրաստելու համար:

Տերևները մեծ քանակությամբ ալկալոիդներ են պարունակում, որի շնորհիվ լայն կիրառում կարող է գտնել դեղագործության բնագավառում:

Բորակաթուփը մեծ նշանակություն ունի նաև ավազուտները կանաչապատելու, հատկապես շարժվող ավազները ամրացնելու համար:

Հայաստանից դուրս Շոբերի բորակաթուփը հանդիպում է նաև Սահարայում, Իրանում, Միջին Ասիայում, Աֆղանստանում, Պովոլժիեում, Գոբիում: Բավականին լայնորեն տարածված բույս է: Թվում է, թե այս տեսակի պահպանության հարցը առանձնապես սրությամբ չպետք է դրվի, քանի որ երբեք էլ անհետացման եզրին չի գտնվում:

Դա ճիշտ է ընդհանրապես, համամոլորակային մասշտաբով: Սակայն չպետք է մոռանալ, որ Շոբերի բորակաթուփը Հայաստանում տարածված է աննշան չափով, հանդիպում է միայն Արարատյան հարթավայրի Երասխահուն գյուղի մոտ գտնվող աղակալած հողերում: Այդ աննշան բուսուտները ներկայումս դատապարտված են ոչնչացման: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի բուսաբանական ինստիտուտի գիտաշխատողների ուսումնասիրությունները ցույց են տվել, որ շուրջ քսան տարի առաջ Արարատյան հարթավայրում եղել է Շոբերի բորակաթփի 4 հեկտար տարածություն զբաղեցնող բուսուտներ, որոնք ոչ մեծ կանգվածներով կենտրոնացված էին Մարգարա, Երասխահուն և Էվջիլար գյուղերի աղուտներում: Ներկայումս այդ բուսուտները հիմնականում ոչնչացել են, մնացել են միայն հատուկենտ թփեր, այն էլ Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի Երասխահունի փորձնական բազայի տերիտորիայում:

Միաժամանակ չպետք է մոռանալ, որ Հայաստանում աճող Շոբերի բորակաթուփը ըստ էության կենսաէկոլոգիական մի շարք առանձնահատկություններով զգալիորեն տարբերվում է երկրագնդի նույնանման բույսերից: Հետևաբար, մեր հանրապետությունում այս տեսակի վերացումը, ոչնչացումը մեծ կորուստ կլինի գիտության համար և այլ վայրերից բերված առանձնյակներով կորուստը չի կարելի վերականգնել:

Նշանակում է, բոլոր ջանքերը պետք է գործադրել, այս անհետացող և հազվագյուտ բուսատեսակը պահպանելու համար:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

Լույս է տեսնում 1923 թվականից

ՊԻՈՆԵՐ 4. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 02007: Պատվեր 189: Տպաքանակ 56000: Տպ. 3 մամ.:
Ստորագրված է տպագրության 23/III 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# ՀՈՒՐՆ ՈՒ ՋՈՒՐԸ

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Զմռան ցրտին
Խոր անտառում
Ծնչահեղձ էր
Լինում առուն:

Սառցի տակից
Ձայն էր տալիս,
Բայց հազիվ էր
Ձայնը գալիս:

Նա տառապեց
Երկա՜ր, երկա՜ր,
Մինչև գարնան
Տաքերն ընկան:

Տեսավ առուն,
Ուրախացավ,
Ինքն էլ առույգ
Ու ժիր դարձավ:

Նա շունչ առավ,
Սառույցն հալեց,
Զնգաց ուրախ
Ու բարբառեց.

— Տե՛ս, հուրն ու ջուրն
Ընկերացան,
Եվ չարիքները
Վերացան:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԻՐԱՎՅԱՆԻ

# ՔԱՄԻՆ

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

Մի բուռ ծղոտ շալակին՝
Քամին ելել է կտուր,
Ծղոտի մեջ շողում է
Զալպուտուրիկ մի փետուր:

— Հե-հե՜յ, տեսեք, ե՛ս եմ, ե՛ս
Այսպես թռցնում քամուն,
Կուզեք ձեզ էլ տանեմ վեր,
Եթե շատ եք ցանկանում:

— Հա՜, հա՜,— պոռթկում է քամին
Ու փետուրին պարծենկոտ
Կտուրից ցած է նետում
Եվ ցատկում է նրա մոտ:

— Հա՜, հա՜,— քամու ծիծաղից
Ցանկապատն է դողդողում,
Հանկարծ փետուրը կրկին
Դեպի երկինք է լողում:

Քամին լռում է հանկարծ,
Զարմանում է, լռջանում,
Փետուրներով է չէ՞ որ
Բազեն վերում սավառնում:

Ու փետուրներ ունի, չէ՞,
Վերում ամեն մի թռչուն,
Ինքն է միայն անփետուր,
Սակայն ինչպե՞ս է թռչում:

Քամին չէր սիրում խորհել,
Այս հարցը ձեզ թողեց նա,
Դե, մտածե՛ք, ձեզանից
Պատասխանն ո՞վ կիմանա...

ԻՆԴԵՔՍ 77806

ԳԻՆԸ 15 Կ.